

«...Ողջունում եմ իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին»:

Վ. Ի. ԼԵՆԻՆ

*2 դեկտեմբերի, 1920 թ.:*

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք:

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 22
ՆՈՅԵՄԲԵՐ
1963

ՀԿԿ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԵՎ ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ 43 ՏԱՐԻՆ

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ իրականացան մեր մեծ հայրենիքում ապրող ժողովուրդների, այդ թվում և հայ ժողովրդի դարավոր իղձերը: Հայ ժողովուրդը մեկընդմիշտ ազատագրվեց դաշնակ-ավանտյուրիստների բռնապետությունից, որոնք Հայաստանը դարձրել էին սովի ու համաճարակի, թալանի ու աղքատության երկիր: Դաշնակների օրոք մեր ժողովրդի ֆիզիկական գոյությունը լուրջ վտանգի տակ էր դրված: Ամեն օր տասնյակ հարյուրավոր մարդիկ մեռնում էին սովից և համաճարակներից: Միայն 1919 թվականի առաջին կիսամյակում սովից ու համաճարակներից Հայաստանում մեռել են ավելի քան 180 հազար մարդ: Իսկ երկու և կես տարվա ընթացքում՝ 489 հազար մարդ: Դաշնակների տիրապետության օրոք ոչնչացվեց Հայաստանի ամբողջ ազգաբնակչության ավելի քան մեկ երրորդ մասը: Երկրի էկոնոմիկայի քայքայման, ժողովրդի բնաջնջման հետ միասին ոչնչանում էր նաև նրա դարավոր կուլտուրան, գրականությունն ու արվեստը:

Արևմտյան իմպերիալիստների վարձկան դաշնակների հակաժողովրդական քաղաքականության հետևանքով ամբողջապես կազմալուծվեց Հայաստանի առանց այն էլ թույլ էկոնոմիկան: 1913 թվականի համեմատությամբ արդյունաբերության համախառն արտադրանքը 1919 թվականին կրճատվեց ավելի քան 12

անգամ, իսկ գյուղատնտեսության արտադրանքը՝ մոտ 6 անգամ։ Դաշնակների կործանարար քաղաքականության հետևանքով երկիրը կանգնած էր ծանր աղետի առջև, երկրի տնտեսության քայքայումը, ժողովրդի անտանելի վիճակը է՛լ ավելի ուժեղացրին ու մասսայական դարձրին ռևոլյուցիոն շարժումները Հայաստանում։

Ռևոլյուցիոն շարժման պատմության մեջ Հայաստանի բանվորներն ու գյուղացիները հերոսական էջ գրեցին 1920 թվականի մայիսին, ապստամբություն բարձրացնելով դաշնակների դեմ։ Սակայն օտարերկրյա իմպերիալիստների հետ համագործակցող դաշնակցական հակառևոլյուցիան արյան մեջ խեղդեց մայիսյան ապստամբությունը։ Արյունալի տեռորի ծանր օրերին դաշնակ դահիճների ձեռքով զոհվեցին հայ ժողովրդի պանծալի զավակներ՝ Ս. Ալավերդյանը, Ս. Մուսայելյանը, Բ. Ղարիբջանյանը, Ղ. Ղուկասյանը, Հ. Սարուխանյանը, Բ. Բատիկյանը և շատ ուրիշներ։ Բայց պարտությունը չընկճեց հայ ժողովրդի ոգին։ Հակառակ դաշնակցականների դաժան տեռորին, ռևոլյուցիոն ուժերը ավելի ու ավելի էին կազմակերպվում։ Նրանք վճռական ճակատամարտերի էին նախապատրաստվում դաշնակների արյունոտ շղթաները հիմնովին ու վերջնականապես փշրելու համար։

Եվ ահա 1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանի աշխատավորները կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, 11-րդ Կարմիր բանակի զորամասերի անմիջական օգնությամբ դուրս վռնդեցին դաշնակ բռնադատիչներին և Հայաստանում հռչակեցին սովետական իշխանություն։ Մեծ Լենինը ջերմորեն ողջունեց հայ ժողովրդի մեծագույն հաղթանակը՝ Հայաստանի խորհրդայնացումը, և 1920 թվականի դեկտեմբերի 2-ին, Երևանի ազատագրման օրը, Հայաստանի ռազմառևոլյուցիոն կոմիտեի նախագահ Սարգիս Կասյանին ուղարկեց հեռագիր, որտեղ ասված էր, որ «Հանձին Ձեզ, ողջունում եմ իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին»։

Սովետական Հայաստանը ժառանգել էր ծայր աստիճան քայքայված տնտեսություն, որի վիճակն է՛լ ավելի վատացավ 1921 թվականի դաշնակցական ավանտյուրայի հետևանքով։ Ռեսպուբլիկայում կային հարյուր հազարավոր գաղթականներ ու որբեր։ Մի շարք







շրջաններում շարունակվում էին սովն ու համաճարակները։ Էկոնոմիկայի վերականգնումը կապված էր շատ դժվարությունների հետ, որոնք հաջողվեց հաղթահարել Սովետական Ռուսաստանի կառավարության, ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնության շնորհիվ։

Սովետական իշխանության հաղթանակը հայ ժողովրդին փրկեց ֆիզիկական ոչնչացումից, ապահովեց նրա ազգային անկախությունը, բացեց երջանկության, տնտեսական և կուլտուրական ծաղկման ճանապարհը։

Պատմության մեջ առաջին անգամ հայ ժողովուրդը հաստատորեն կանգնեց ազգային վերածնման անշեղ ուղու վրա, ձեռք բերեց ազատություն, ինքնուրույն պետականություն և սուվերենություն։

«Կար ժամանակ,— ասել է ընկեր Ա. Ի. Միկոյանը,— իսկ այդ ժամանակները այժմ ընդմիշտ ետևում են մնացել, երբ Անդրկովկասի ժողովուրդները արյուն ու արցունք էին թափում։ Մեր ժողովրդի կողմից թափված արյունը ապարդյուն չկորավ, այն ամրապնդում է Անդրկովկասի սոցիալիստական ազգերի բարեկամությունը, ամրապնդում է բարեկամությունը՝ մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների միջև։ Այժմ հասել է ժամանակը, երբ կարելի է բաժանել ստեղծարար մեծ աշխատանքի բերկրանքն ու երջանկությունը, կոմունիզմի կառուցման ճանապարհին եղած դժվարությունների հաղթահարման ստեղծագործական բերկրանքը»։

Սովետական իշխանության տարիներին կոմունիստական պարտիայի լենինյան ազգային իմաստուն քաղաքականության կենսագործման շնորհիվ, ռուս մեծ ժողովրդի և ՍՍՌՄ մյուս ժողովուրդների եղբայրական, անշահախնդիր համագործակցության ու օգնության շնորհիվ երբեմնի կիսագաղութային ավերված Հայաստանը դարձավ ծաղկող ռեսպուբլիկա և այժմ ապրում է իր էկոնոմիկայի աննախընթաց վերելքի շրջանը։

Սովետական Հայաստանի աշխատավորությունն այժմ իր ազատագրման 43-րդ տարին տոնում է արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, գիտության ու կուլտուրայի, գրականության և արվեստի բնագավառներում ձեռք բերած խոշորագույն հաջողությունների պայմաններում։ Սովետական Հայաստանում բուռն թափով զարգացել է սոցիալիստական արդյունաբերությունը։ Ստեղծվել է բարձր զարգացած քիմիական արդյունաբերություն, էներգետիկայի, հաս-

տոցաշինական, սարքաշինական, լեռնահանքային, շինանյութերի և ժողովրդական տնտեսության զարգացման համար անհրաժեշտ նյութերի ու առարկաների արդյունաբերություն։

Այժմ Հայաստանի բոլոր գործարաններն ու ֆաբրիկաները զինված են հայրենական և ժողովրդա-դեմոկրատական երկրների նորագույն տեխնիկայով։ Հայաստանի արդյունաբերության զարգացումը բնութագրելու համար բավական է ասել, որ նրա արդյունաբերական ձեռնարկությունների արտադրած ավելի քան 70 տեսակի ապրանքներ արտահանվում են արտասահմանյան մի քանի տասնյակ երկրներ։ 1913 թվականի համեմատությամբ այժմ մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների տարեկան արտադրանքի ծավալը 70 անգամ ավելի է։ Տարեցտարի ավելի ու ավելի է հզորանում Սովետական Հայաստանի արդյունաբերությունը։ Այն է՛լ ավելի բուռն վերելք ապրեց հատկապես մեր կյանքի վերջին տասնամյակում, որը իրավամբ հռչակվեց որպես սովետական երկրի կյանքի մեծ տասնամյակ։ Այդ ժամանակաշրջանում ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը մեծացել է 2,6 անգամ, այդ թվում քիմիական արդյունաբերության ծավալը՝ 3,6 անգամ, մեքենաշինությանը և մետաղամշակմանը՝ 5,3 անգամ։ Հետաքրքրական է նշել, որ 1953 թվականից մինչև 1963 թվականը ռեսպուբլիկայի արդյունաբերությունը 2,5 անգամ ավելի շատ արտադրանք է թողարկել, քան 1921 թվականից մինչև 1952 թվականը։ 1953 թվականից մինչև 1963 թվականը կառուցվել ու շահագործման են հանձնվել 75 խոշոր արդյունաբերական ձեռնարկություն, երկու միլիոն 817 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն՝ նախորդ 32 տարվա մեկ միլիոն 907 հազար քառակուսի մետրի դիմաց։ Այդ նույն ժամանակամիջոցում ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները երկու անգամ գերազանցել են 1921—1952 թվականների ներդրումներին։

1962 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման պետական առաջադրանքները կատարվեցին 102,5 տոկոսով։ Արտադրանքի աճը, 1961 թվականի համեմատությամբ, կազմեց 8,3 տոկոս։ 1962 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբե-



րությունը պլանից դուրս տվեց մի քանի տասնյակ միլիոն ռուբլու արտադրանք։

Ռեսպուբլիկայի աշխատավորները խոշոր հաջողությունների են հասել նաև 1963 թվականի անցած ամիսներին։ Արդյունաբերությունը ժամկետից շուտ՝ հունիսի 26-ին կատարեց համախառն արտադրանքի թողարկման 1963 թվականի՝ յոթնամյակի հինգերորդ տարվա կիսամյա պլանը։ Իսկ ինն ամսվա համախառն արտադրանքի թողարկման պլանը կատարեց 102,7 տոկոսով։ Արդյունաբերական արտադրանքի թողարկումը անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, ինչպես ռեսպուբլիկայում, այնպես էլ ժողտնտխորհի ձեռնարկություններում աճել է 10,7 տոկոսով։ Հաջողությամբ է կատարվել նաև աշխատանքի արտադրողականության պլանը, այն աճել է 4,2 տոկոսով։ Իսկ արտադրանքի ինքնարժեքի իջեցման առաջադրանքը գերակատարվել է։ Ստացվել է ավելի քան ինը միլիոն ռուբլու գերպլանային տնտեսում։

Սովետական Հայաստանի գործարաններն ու ֆաբրիկաները այժմ արտադրում են ալյումին, պղինձ, կաբել, գեներատորներ, ավտոդողեր, տրանսֆորմատորներ, հիդրոտուրբիններ, կոմպրեսորներ, մետաղահատ դազգահներ, էլեկտրաչափիչ գործիքներ, ժամացույցներ, շինանյութեր, բրդյա և մետաքսյա գործվածքներ, կոշկեղեն, սննդամթերք և բազմաթիվ այլ տեսակի արդյունաբերական ապրանքներ։

Նշանակալից նվաճումներ են ձեռք բերել նաև մեր շինարարներն ու մոնտաժողները։ Ինչպես հայտնի է 1962 թվականի վերջին և այս տարվա առաջին կիսամյակի ընթացքում նրանք ավարտեցին և շահագործման հանձնեցին արդյունաբերական այնպիսի խոշոր ու կարևոր կառույցներ, ինչպիսիք են Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատը, Կիրովականի արհեստական մետաքսաթելի ֆաբրիկան, Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի էլեկտրոլիզի ցեխը, պոլիվինիլացետատ գործարանի ացետիլցելյուլոզի ցեխերի կոմպլեքսը, Երևանի ջերմաէլեկտրակայանի առաջին ագրեգատը, մեծացվեցին Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական և հախճապակու գործարանների հզորությունները, ավարտվեց Երևան—Սևան երկաթուղագծի էլեկտրիֆիկացումը և այլն։

Մանր արդյունաբերության բազայի վրա Հայաս-

տանում ստեղծվել է թեթև և սննդի բազմաճյուղ արդյունաբերություն։ Է՛լ ավելի մեծ ծավալ է ստացել ժողովրդական լայն սպառման ապրանքների արտադրությունը։

Ռեսպուբլիկայի ժողովրդական սպառման ապրանքների արդյունաբերական ձեռնարկությունները այս տարվա անցած ինն ամսում թողարկել են 9 միլիոն 789 հազար քառակուսի մետր բրդյա և մետաքսյա գործվածք, 45 միլիոն քառակուսի մետր բամբակե գործվածք, ավելի քան 4 միլիոն 729 հազար զույգ կոշիկ, 21 միլիոն 942 հազար հատ տրիկոտաժե սպիտակեղեն և վերնազգեստ, ավելի քան 30 միլիոն զույգ գուլպեղեն, 1 միլիոն 534 հազար հատ ժամացույց և այլն։

Այսպիսով, անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, այս տարի ավել է արտադրվել 6 միլիոն քառակուսի մետր բամբակե և մետաքսյա գործվածք, 1 միլիոն 580 հազար հատ տրիկոտաժե սպիտակեղեն և վերնազգեստ, 443 հազար զույգ կաշվե կոշկեղեն, 2,5 միլիոն զույգ գուլպեղեն և այլն։

Մեր ռեսպուբլիկան սովետական իշխանության տարիներին մեծ թռիչք կատարեց էլեկտրաարդյունաբերության զարգացման ուղղությամբ։ Հայաստանի երբեմնի խավարի մեջ խարխափող գյուղերն ու քաղաքները այժմ իրենց գեղեցիկ ու վեհանիստ շինություններով թաղված են էլեկտրական բազմերանգ լույսերի առատ ծովում։ Սովետական իշխանության տարիներին Հայաստանում կառուցվել են ավելի քան 30 խոշոր ու միջին էլեկտրակայաններ։ Ռեսպուբլիկայում այժմ տարեկան արտադրվում է ավելի քան 2,7 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Դա 1,4 անգամ շատ է, քան 1913 թվականին ամբողջ ցարական Ռուսաստանում արտադրված էլեկտրաէներգիան։

Մեր ռեսպուբլիկան դարձել է համատարած էլեկտրիֆիկացիայի երկիր։ Բնակչության մեկ շնչի համար 15 անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա է արտադրվում, քան Թուրքիայում, 41 անգամ շատ, քան Իրանում։ Էլեկտրաէներգիայի արտադրությամբ Սովետական Հայաստանը առաջ է անցել կապիտալիստական այնպիսի երկրներից, ինչպիսիք են՝ Ֆրանսիան, Ճապոնիան և Իտալիան։



Էլեկտրաէներգիայի հսկայական աճը և նոր հիդրոէլեկտրակայանների կառուցումը է՛լ ավելի լայն հեռանկարներ են բացում Սովետական Հայաստանի արդյունաբերության, առանձնապես ծանր արդյունաբերության և կոլտնտեսային գյուղացիության աճող պահանջմունքները առավելագույն չափով բավարարելու համար։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ամբողջ ռեսպուբլիկայով մեկ լայն տարածում է ստացել կոմունիստական աշխատանքի հարվածայինի բարձր կոչմանն արժանանալու հայրենասիրական շարժումը։ Այժմ այդ շարժման մեջ ընդգրկված է ավելի քան 130 հազար մարդ։ Կոմունիստական աշխատանքի կոչման համար պայքարում են 5.672 բրիգադներ՝ իրենց 99 հազար աշխատողներով։ 1.349 բրիգադի շնորհվել է կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի բարձր կոչում։ Կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչման համար պայքարում են մոտ 32 հազար բանվորներ, ծառայողներ և ինժեներատեխնիկական աշխատողներ, որոնցից 7.372-ը պատվով կրում են այդ կոչումը։ Կոմունիստականի կոչման համար պայքարող 829 ցեխերի, ֆերմաների և աշխատանքային այլ տեղամասերի կոլեկտիվներից 160-ը արժանացել են այդ պատվին։ 138 ձեռնարկությունների կոլեկտիվներ պայքարում են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման համար, դրանցից երկուսը՝ Երևանի Կիրովի անվան գործարանը և Շահումյանի տրիկոտաժի ֆաբրիկան ռեսպուբլիկայում առաջինն արժանացան կոմունիստական աշխատանքի ձեռնարկության բարձր կոչման։ Կոմունիստական աշխատանքի համար մղվող պայքարում ծնունդ առան և արմատավորվում են մրցության մասնակիցների այնպիսի օգտակար նախաձեռնություններ, ինչպիսիք են՝ յուրաքանչյուր րոպեն լիարժեք օգտագործելը, հաստոցների կարողությունը լրիվ գործադրելը, երիտասարդ բանվորներին հասարակական հիմունքներով սովորեցնելը և այլն։

Տարեցտարի ստվարանում են ռացիոնալիզատորների և գյուտարարների շարքերը, բարձրանում է նրանց դերը էկոնոմիկայի զարգացման և մասսաների աշխատանքային դաստիարակության գործում։ 1963 թվականի անցած ինն ամիսների ընթացքում ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել է ավելի,

քան 7 հազար առաջարկ, որը տարեկան հաշվով տալիս է 7 միլիոն ռուբլուց ավելի տնտեսում։

Լենինյան պարտիայի Կենտրոնական Կոմիտեն ակտիվ հարձակում է գործում կոմունիստական շինարարության բոլոր ճակատներում։ Անցյալ տարի ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան ու նոյեմբերյան պլենումներում լուծվեցին արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության ժողովրդական տնտեսության ղեկավարման հարցերը։ Արդի պայմաններում, ստեղծագործաբար վերականգնելով ու զարգացնելով ժողովրդական տնտեսության ղեկավարման լենինյան սկզբունքները, կենսագործելով ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները, պարտիան մշակեց չտեսնված մասշտաբի միջոցառումներ ու ձեռնամուխ եղավ դրանց իրականացմանը, որոնց նպատակն է արագացնել մեր երկրում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը։

Կոլտնտեսային կարգի հաղթանակով Հայաստանի գյուղատնտեսությունը արմատապես վերափոխվեց։ Բացվեցին գյուղատնտեսական արտադրության աճի անսահմանափակ հնարավորություններ։ Հսկայական նշանակություն ունեն նախապատերազմյան հնգամյակների տարիներին ռեսպուբլիկայում ստեղծված հզոր ոռոգիչ սիստեմները, որոնք կյանքի են կոչել հազարավոր հեկտար անմշակ հողատարածություններ։ Կոլտնտեսություններն ու սովխոզները այժմ այնպիսի նյութատեխնիկական բազա ունեն, որը հնարավորություն է տալիս գյուղատնտեսությունը վարել ժամանակակից ագրոտեխնիկական գիտության բոլոր կանոնների համաձայն։ Գնալով է՛լ ավելի է աճում կոլտնտեսությունների ու սովխոզների տեխնիկական զինվածությունը։

Ռեսպուբլիկայի աշխատավորները կենսագործելով գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ պարտիայի ու կառավարության միջոցառումները, զգալի հաջողություններ ձեռք բերեցին գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու, անասունների գլխաքանակը և մթերատվությունը ավելացնելու ուղղությամբ։ 1962 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, ավելացան ցանքատարածությունները և համախառն բերքը։ Մեծ չափով ավելացվել և ընդարձակվել են խաղողի և պտղատու այգիները, հացահատիկի, շաքարի ճակնդեղի, ծխախոտի, բանջարեղենի և այլ կուլտուրաների ցանքատարածությունները։



Գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների ցանքատարածությունները ռեսպուբլիկայում կազմում են 412,7 հազար հեկտար, այդ թվում՝ հացահատիկային կուլտուրաներ՝ (առանց եգիպտացորենի) 231,7 հազար հեկտար, որից ցորեն՝ 143,5 հազար հեկտար, հատիկալոբազգի կուլտուրաներ՝ 4,5 հազար հեկտար, հատիկացու, սիլոսացու և կանաչ կերի եգիպտացորեն՝ 23,5 հազար հեկտար, բամբակենի՝ 10,5, ծխախոտ՝ 7,8, կարտոֆիլ՝ 15,5, բանջարեղեն՝ 8,7 հազար հեկտար։ Զգալիորեն ավելացավ անասնապահական մթերքների արտադրությունը։ 1953 թվականից մինչև 1962 թվականը մսի արտադրությունը ավելացել է 63 տոկոսով, կաթինը՝ 86, բրդինը՝ 60, իսկ ձվինը՝ 125 տոկոսով։

Անձնվեր գործունեություն են ծավալել գյուղատնտեսության բնագավառի աշխատողները։ Չնայած այս տարվա անբարենպաստ եղանակներին, նրանք ամեն ինչ արեցին դժվարությունները հաղթահարելու և մսի, կաթի, բրդի, ձվի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունն ավելացնելու ու դրանք պետությանը վաճառելու՝ 1963 թվականի սոցիալիստական պարտավորությունները պատվով կատարելու համար։

Այս տարվա առաջին կիսամյակում, անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, կոլտնտեսություններում ու սովխոզներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացավ 24 հազարով կամ 5 տոկոսով, այդ թվում՝ կովերինը՝ 4,9 հազարով կամ 4 տոկոսով, ոչխարներինը և այծերինը՝ 115,4 հազարով կամ 7 տոկոսով, թռչուններինը՝ 191,6 հազարով կամ 9 տոկոսով։ Մեկ կովի միջին կաթնատվությունը ավելացավ 6 տոկոսով։ Եթե 1962 թվականի առաջին կիսամյակում անասունների և թռչունների (կենդանի քաշով) պետական գնումների չափը կազմում էր 71,2 հազար ցենտներ, ապա 1963 թվականի առաջին կիսամյակում այն հասավ 84,4 հազար ցենտների, համապատասխանաբար կաթինը՝ 768,4 ցենտներից 921,1 հազար ցենտներ, ձվինը՝ 33,1 հազարից հասավ 36,7 հազար հատի։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության հետագա զարգացման նպատակով 1962 թվականից սկսվեց Ապարանի ջրամբարի շինարարությունը, որը կարևոր դեր է խաղալու ոչ միայն ոռոգման ասպարեզում, այլև զգա-

լիորեն կրճատելու է Սևանա լճից հոսող ջուրը։ Գյուղատնտեսության վերելքի գործում նշանակալից կլինի նաև Ախուրյանի կառուցվելիք ջրամբարը։

Այժմ վիթխարի խնդիրներ են դրված մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության ու գյուղատնտեսության աշխատողների առջև։ Այդ խնդիրների կատարումը ռեսպուբլիկայի յուրաքանչյուր աշխատավորից պահանջում է բարեխիղճ ու սրտացավ, աշխատանքի նկատմամբ իսկական կոմունիստական վերաբերմունք ցուցաբերել՝ արդյունաբերության և գյուղատնտեսության արտադրանքը շեշտակիորեն բարձրացնելու համար։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանի արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրության վերելքը նպաստավոր պայմաններ ստեղծեց աշխատավորների եկամուտների աճի, նրանց բարեկեցության և գնողունակության բարձրացման համար։ Սովետական ժողովրդի կենսամակարդակի անընդհատ աճի ապահովումը շարունակ եղել է կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության ուշադրության կենտրոնում։ Վերջին տարիներին պարտիան և կառավարությունը իրագործեցին մի շարք արմատական միջոցառումներ, որոնք ապահովեցին սովետական ամբողջ ժողովրդի, այդ թվում և հայ ժողովրդի կենսապայմանների բարելավումը, նյութական բարեկեցությունը և կուլտուրական բարձր մակարդակը։ Միայն ապրանքաշրջանառությունը վերջին տասը տարվա ընթացքում մեր ռեսպուբլիկայում ավելացել է 2,3 անգամ։ Մանրածախ ապրանքաշրջանառության 1962 թվականի պլանը կատարվեց 104,6 տոկոսով։ Զգալիորեն ընդլայնվել է առևտրական ցանցը և մասնագիտացվել է այն։ Գնալով ավելի լայնորեն են արմատավորվում բնակչության սպասարկման նոր, առաջավոր մեթոդները։ Եթե արհեստակցական միությունների սոցիալական ապահովագրության բյուջեն 1959 թվականին եղել է 19.362 հազար ռուբլի, ապա 1963 թվականին նախատեսված է 29.538 հազար ռուբլի։ 1963 թվականին միութենական և ռեսպուբլիկական սանատորիաներում, հանգստյան տներում, տուրիստական բազաներում և այլուր բուժվելու և հանգստանալու են 53.425 մարդ, այդ նպատակի համար կծախսվի 2 միլիոն 461.500 ռուբլի։

Մեծ են հաջողությունները բնակարանային շինարարության գործում։ Միայն 1962 թվականին և այս



տարվա անցած ժամանակաշրջանում նոր բնակարաններ են ստացել մոտավորապես 20 հազար աշխատավորներ։ Պետական կենտրոնացված կապիտալ ներդրումների, պետական վարկի և աշխատավորների խնայողությունների հաշվին 1962 թվականին կառուցվել և շահագործման է հանձնվել 787 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն կամ ավելի քան 16 հազար բնակարան։ Պլանը գերակատարվել է 34 հազար քառակուսի մետրով։ Բնակարանային շինարարության պլանը կատարվել է նաև 1963 թվականի առաջին կիսամյակում։ Բնակարանային շինարարությունը է՛լ ավելի մեծ թափ է ստանալու յոթնամյակի հաջորդ տարիներին։ Մինչև 1965 թվականը ռեսպուբլիկայի բնակչության համար կկառուցվի 2 միլիոն 400 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն կամ ավելի քան 75 հազար նոր բնակարան։

Պարտիան և կառավարությունը ամեն ինչ անում են, որպեսզի ըստ ամենայնի ապահովեն սովետական մարդու բարեկեցիկ ու կուլտուրական կյանքը։ Այդ մասին պերճախոս կերպով կարող է վկայել հենց միայն այն փաստը, որ ապշեցուցիչ վերափոխումներ են տեղի ունենում մեր ռեսպուբլիկայում։ Ի՞նչ էր ներկայացնում Երևանը ռևոլյուցիայից առաջ։ Դա մոտավորապես 30 հազար բնակիչ ունեցող գավառական փոքրիկ քաղաք էր կավաշեն տների խիտ զանգվածներով։ Սովետական իշխանության տարիներին Երևանը դարձել է իր ճարտարապետությամբ ժամանակակից խոշոր ու գեղեցիկ քաղաք, որտեղ բարձրանում են գործարանների ու ֆաբրիկաների, գիտական հիմնարկների ու թատրոնների նոր կորպուսներ և բազմահարկ լուսավոր բնակելի շենքեր։ Հիմնովին վերափոխվել և անճանաչելի են դարձել նաև Լենինականը, Կիրովականը և ռեսպուբլիկայի մյուս քաղաքները։

Կոմունիստական պարտիայի ամենօրյա հոգատարության շնորհիվ մեծ վերելք է ապրում Սովետական Հայաստանի ժողովրդական կրթությունը։ Ամեն տարի կառուցվում են նորանոր դպրոցներ և ուսումնական արհեստանոցներ։ Այժմ ռեսպուբլիկայում գործում են 164 տարրական, 456 արտադրական ուսուցմամբ միջնակարգ և 742 ութամյա դպրոցներ։ Անընդհատ աճում է դպրոցներում սովորողների թիվը, եթե 1958—1959 ուսումնական տարում դպրոցներում սովորում էին 274 հազար

266 աշակերտ, ապա այս ուսումնական տարում սովորում են 419 հազար 500 աշակերտ։ Միայն անցյալ ուսումնական տարում ռեսպուբլիկայի դպրոցների 3.618 շրջանավարտներ ստացան տարբեր մասնագիտությունների որակավորում։ Ռեսպուբլիկայի դպրոցներում այժմ աշխատում են ավելի քան 23 հազար 300 ուսուցիչներ, որոնք անխոնջ աշխատանք են կատարում մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության գործում։ Մեր ռեսպուբլիկայում այժմ յուրաքանչյուր չորս հոգուն ընկնում է մեկ սովորող։ Ուսումնական հաստատություններում այժմ սովորում են ավելի քան 457 հազար մարդ, այսինքն մեր բնակչության մոտ 23 տոկոսը։ Բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են մոտավորապես 26 հազար ուսանողներ։ Այդ թիվը 1962 թվականի համեմատությամբ 3,8 հազարով ավելի է։ Հետաքրքրական է նշել, որ մեր ռեսպուբլիկայում 100 հազար բնակչին երեք անգամ ավելի շատ ուսանող է ընկնում, քան Ֆրանսիայում ու Բելգիայում։ Ընթացիկ տարում մեր ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատությունները տվեցին ավելի քան 3,2 հազար մասնագետ, իսկ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները՝ ավելի քան 3,5 հազար։ Այսպիսով Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսությունը ստացավ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ մոտ 7 հազար մասնագետ։ Պարտիայի և կառավարության գործնական միջոցառումների կենսագործման շնորհիվ գնալով էլ ավելի են կատարելագործվում երիտասարդության ուսուցման և դաստիարակության սիստեմներն ու մեթոդները։ Սովորող երիտասարդության հետ տարվող աշխատանքը, նրանց կենցաղային պայմանների բարելավումն ու կոմունիստական դաստիարակության հարցերը միշտ եղել և մնում են մեր պարտիայի ու կառավարության ամենօրյա հոգատարության առարկան։

«Ժողովրդական ուսուցիչը,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— պարտիայի գլխավոր հենարանն է ժողովրդի կուլտուրայի բարձրացման համար մղվող պայքարում, պարտիայի ամենամոտ մարդը նոր մարդու դաստիարակության գործում»։

Լայն հորիզոններ են բացվել Սովետական Հայաստանի գիտության տարբեր բնագավառների զարգացման համար։ Մեր գիտությունների ակադեմիան մեծ ճանաչում է գտել Սովետական Միությունում և նրա սահման-



ներից դուրս։ Գիտության տարբեր բնագավառներում հայ գիտնականները կատարել են աչքի ընկնող հայտնագործություններ։ Նրանք հաջողությամբ մշակում են միջուկային ֆիզիկայի, քիմիայի, աստղագիտության, մաթեմատիկայի, հաշվողական տեխնիկայի, կիբերնետիկայի, աստրոֆիզիկայի և այլ կարևոր պրոբլեմներ։ Սովետական Հայաստանում այժմ գործում է 85 գիտական հիմնարկություն, որից 64-ը գիտահետազոտական ինստիտուտ՝ իրենց ֆիլիալներով։ Գիտական աշխատանքներ են կատարվում նաև ռեսպուբլիկայի 11 բարձրագույն ուսումնական հաստատություններում։ Այժմ Հայաստանում գիտական աշխատանքով է զբաղված ավելի քան 6.200 մարդ։

Աննախընթաց վերելք է ապրում սովետահայ կուլտուրան։ Ռեսպուբլիկայում ստեղծված է կինոթատրոնների, ակումբ-գրադարանների խիտ ցանց։ Բավական է նշել, որ Հայաստանի գյուղերում ու քաղաքներում գործում են 944 ակումբներ, այդ թվում՝ 52 կուլտուրայի տներ ու պալատներ, 2.600 գրադարաններ՝ 18 միլիոն կտոր գրքային ֆոնդով։ Այժմ հրատարակվում են ռեսպուբլիկական 10 թերթ՝ մոտ 80 միլիոն օրինակ տիրաժով, 16 քաղաքային, շրջանային և միջշրջանային և մոտ 40 բազմատիրաժ թերթեր 24 միլիոն օրինակ տարեկան տպաքանակով, 17 ամսագիր, 20-ից ավելի զանազան պարբերականներ։ Այժմ մեզ մոտ թերթեր, ամսագրեր և գրքեր են լույս ընծայվում ոչ միայն հայերեն լեզվով, այլև ռուսերեն, ադրբեջաներեն և քրդերեն լեզուներով։ Տարեցտարի ընդլայնվում է մամուլի բաժանորդների թիվը, եթե անցյալ տարի մեր ռեսպուբլիկայում բնակչության յուրաքանչյուր հազար մարդուն ընկնող թերթերի ու ամսագրերի թիվը կազմում էր 389 օրինակ, ապա այս տարի այն կազմում է 421 օրինակ։

Սովետահայ կուլտուրայի աննախընթաց զարգացման շնորհիվ տարեցտարի ընդլայնվում են մեր կուլտուրական կապերը արտասահմանյան երկրների հետ։ Այժմ Սովետական Հայաստանը կուլտուրական կապեր ունի աշխարհի 42 երկրների հետ։ Վերջին տարիներին էլ ավելի է ուժեղացել կապը սփյուռքահայ առաջադիմական կազմակերպությունների հետ։

Ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում մեր աշխատավորների ձեռք բերած վիթխարի հաջողությունները էլ ավելի են ուժեղացնում սփյուռքահայերի ձգտումը դեպի Սովետական Հայաստան, որը

ընկեր Խրուշչովի պատկերավոր արտահայտությամբ մագնիսի պես իրեն է ձգում հայ ժողովրդի լավագույն որդիներին ու դուստրերին։ Կիպրոսից, Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայից, Իրանից և ուրիշ երկրներից վերջին մեկ տարվա ընթացքում Սովետական Հայաստան են վերադարձել ավելի քան 2.600 հայեր, որոնք ջերմորեն ու գրկաբաց ընդունվեցին իրենց սիրասուն Հայրենիքում։ Նրանց համար ստեղծվեցին կենցաղային, աշխատանքային և կրթություն ստանալու լավագույն պայմաններ։ Այժմ նրանք հարազատ հայրենիքում ակտիվ մասնակցություն են ունենում ժողովրդական տնտեսության աննախընթաց վերելքի մեծ գործին։

Սովետական Միության կոմունիստական պարտիան, սովետական կառավարությունը վարում են լենինյան իմաստուն խաղաղասիրական արտաքին քաղաքականություն։ Խաղաղությունը թանկ է աշխարհի բոլոր ժողովուրդների, այդ թվում և հայ ժողովրդի համար։ Նա ամբողջ հոգով ատում է պատերազմը, որը ժողովուրդներին անհամար զոհեր և տառապանքներ է բերում։

Սովետական Հայաստանի բոլոր աշխատավորները միահամուռ պաշտպանում են կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը, մեր հզոր սոցիալիստական պետության պաշտպանունակության ամրապնդման քաղաքականությունը, որը անսպառ եռանդով գլխավորում է խաղաղության և ժողովուրդների բարեկամության համար մղվող պայքարի մեծ մարտիկ, հավատարիմ լենինյան Ն. Ս. Խրուշչովը։

Պարտիան հատուկ եռանդով ու հետևողականությամբ ձեռնամուխ է եղել գաղափարական, դաստիարակչական աշխատանքի արմատական բարելավմանը։ Գաղափարական աշխատանքի բարելավման ուղղությամբ վերջին ժամանակներս պարտիայի կիրառած միջոցառումների շարքում կարևոր նշանակություն ունեցան գրականության և արվեստի գործիչների հետ պարտիայի և կառավարության ղեկավարների հանդիպումները։

Մեր ամբողջ գաղափարական աշխատանքի անխզելի բաղկացուցիչ մասն է հանդիսանում աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունը։ Պարտիայի հունիսյան պլենումը պարտավորեցրեց ուժեղացնել աշխա-



տավորներին սովետական հայրենասիրության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու աշխատանքը, ամրապնդել Սովետական Միության ժողովուրդների եղբայրական բարեկամությունը՝ սոցիալիզմի մեծագույն նվաճումը, ակտիվորեն նպաստել ժողովուրդների փոխհարստացմանը, անհաշտ պայքար մղել նացիոնալիզմի ամեն տեսակ դրսևորումների դեմ։ ՍՄԿՊ ծրագրի դրույթներն ու պարտիայի ցուցումները անշեղորեն են իրականացվում մեր ռեսպուբլիկայում։ Գնալով ուժեղանում է աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունը, ամրապնդվում եղբայրական ռեսպուբլիկաների հետ ունեցած մեր տնտեսական ու կուլտուրական կապերը։ Այսպիսի կապերի աճի վառ դրսևորում է եղբայրական ռեսպուբլիկաների ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների, շրջանների, քաղաքների սոցիալիստական մրցությունը։ Ավելի ու ավելի է ծավալվում եղբայրական Ուկրաինայի մայրաքաղաք Կիևի և Երևանի, Քութաիսիի, Կիրովաբադի և Լենինականի, Հայաստանի, Ադրբեջանի և Վրաստանի շատ ու շատ շրջանների մրցությունը։

Անդրկովկասի գիտնականների համատեղ ջանքերի և սերտ համագործակցության շնորհիվ ներկայումս մշակվում են այնպիսի գիտական պրոբլեմներ, ինչպիսիք են՝ Անդրկովկասի միացյալ էներգոսիստեմի, արտադրական պրոցեսների ավտոմատացման, կիբեռնետիկայի, օգտակար հանածոների կոմպլեքսային օգտագործման հարցերը և այլն։ Ամեն տարի մասսայական տպաքանակով հայերեն լեզվով հրատարակվում են միութենական բոլոր ռեսպուբլիկաների գրողների ստեղծագործությունները։

Հայաստանի և եղբայրական մյուս ռեսպուբլիկաների ժողովուրդների բարեկամությունը գնալով էլ ավելի է ամրապնդվում, նոր բովանդակություն և որակ է ստանում, այն դառնում է իսկական եղբայրություն։ Մեր ռեսպուբլիկայի տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում, որպես հարազատ եղբայրներ, հայերի հետ կողք-կողքի, համատեղ աշխատում են մեր հայրենիքի բազմաթիվ ազգությունների ներկայացուցիչները՝ ռուսներ, ադրբեջանցիներ, ուկրաինացիներ, քրդեր և այլն։

«Հայ ժողովուրդը,— ասել է Ն. Ս. Խրուշչովը,— դարերով բարեկամության սերտ, անխզելի կապերով կապ-

ված է ռուս մեծ ժողովրդի և մեր երկրի մյուս ժողովուրդների հետ։ Այդ բարեկամությունը, որը ստեղծվել է օտար զավթիչների, ցարական ինքնակալության, կալվածատերերի ու կապիտալիստների ճնշման դեմ երկարամյա պայքարում, հատկապես ամրապնդվեց սովետական իշխանության համար մղված պայքարում, սոցիալիստական շինարարության տարիներին»։

Սովետական մարդկանց գիտակցության կոմունիստական աշխարհայացքի ձևավորումը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի ամենակարևոր խնդիրներից մեկն է։ Սոցիալիստական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը ամենևին չի նշանակում թուլացնել դասակարգային պայքարը միջազգային ասպարեզում։ Յուրաքանչյուր սովետական մարդ պետք է միշտ գիտենա, որ արտասահմանյան ռեակցիոն ուժերը, այդ թվում և դաշնակները, ձգնում են ամենաստոր միջոցներով տարածել թշնամական գաղափարախոսությունը և մասնավորապես նացիոնալիզմը, որը կապիտալիզմի առավել կենսունակ մնացուկն է։ Ահա թե ինչու բուրժուական գաղափարախոսության դեմ անհաշտ, հարձակողական պայքարի հարցերը, աշխատավորներին նրա ապականող ազդեցությունից պաշտպանելն ու հեռու պահելը միշտ գտնվում է մեր պարտիայի ուշադրության կենտրոնում։

Բուրժուական գաղափարախոսության բոլոր ռեցիդիվների դեմ կոմունիստական պարտիան հմտորեն օգտագործում է գաղափարական աշխատանքի բոլոր միջոցներն ու ձևերը՝ մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, գրականությունն ու արվեստը, որպեսզի հաջողությամբ կենսագործվի պարտիայի XXII համագումարի և ՍՄԿՊ ծրագրի մեծ կանխագծումները։

Հայաստանի կոմունիստական պարտիան, ամբողջ աշխատավորությունը ինչպես միշտ, այսուհետև ևս անշեղորեն կիրականացնեն Սովետական Միության կոմունիստական պարտիայի լենինյան Կենտրոնական Կոմիտեի իմաստուն ցուցումներն ու դիրեկտիվները։ Ռեսպուբլիկայի աշխատավորները ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում ձեռք բերած նորանոր նվաճումներով ու աշխատանքային սխրանքներով կդիմավորեն Հայաստանի կոմպարտիայի XXIII համագումարը։

# ՔՐՈՒՑՑ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՔԻՄԻԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

Վերջերս մամուլում հրապարակվեց ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի նամակը՝ հացահատիկային և մյուս գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու համար հանքային պարարտանյութերի և բույսերի պաշտպանության քիմիական միջոցների արտադրությունն ավելացնելու մասին։ Այդ նամակում քաղաքական և տնտեսական մեծ խնդիր է դրվում աշխատավորների առջև՝ հողագործության քիմիացման միջոցով ապահովել գյուղատնտեսական արտադրության հետագա արագ վերելքը։

Հայտնի է, որ պարտիայի XXII համագումարի որոշումներով նախատեսված է մինչև 1970 թվականը մեր երկրում հացահատիկի արտադրությունը տարեկան հասցնել 14 միլիարդ փթի, իսկ 1980 թվականին՝ 18—19 միլիարդ փթի։ Այդ խնդրի կենսագործումը պահանջում է մեծ աշխատանք կատարել հացահատիկի բերքատվությունը բարձրացնելու գործում։ Այժմ խնդիր է դրվում առաջիկա տարիներին բերքատվությունը բարձրացնելու միջոցով հացահատիկի արտադրությունը ավելացնել առնվազն 5 միլիարդ փթով։

Մեզ մոտ հացահատիկի և մյուս կուլտուրաների բերքատվությունը ցածր է և դրա պատճառը ամենից առաջ այն է, որ հողերը անհրաժեշտ չափով չեն պարարտացվում հանքային պարարտանյութերով, չեն կիրառվում հերբիցիդներ, թունաքիմիկատներ և բույսերի պաշտպանության քիմիական այլ միջոցներ։ Այդպիսի պայմաններում, երբ տարին էլ անբարենպաստ է լինում, ավելի է իջնում բերքատվությունը։ Հենց այդպես էլ եղավ ընթացիկ տարում։ Երկրի որոշ շրջաններում ցրտահարվեցին աշնանացան ցանքերը և դրան ավելացավ ամռան երաշտը։ Արդյունքը եղավ այն, որ խիստ ընկավ հատկապես հացահատիկի բերքատվությունը։ Հետևաբար բերքատվության բարձրացման ուղիներից ամենից հնարավորը և էֆեկտիվը մնում է հողի պարարտացումը։ Պայքար բերքատվության բարձրացման համար, դա պայքար է հանքային պարարտանյութերի





արտադրությունն ավելացնելու համար և այդ հիմքի վրա գյուղատնտեսության քիմիացման համար։

Գյուղատնտեսության քիմիացումը վճռական նշանակություն կունենա հացահատիկի և մյուս կուլտուրաների բերքատվության բարձրացման գործում։ Փորձը ցույց է տալիս, որ հանքային պարարտանյութերից, օրինակ, ամոնյակային բորակի մեկ ցենտները ցորենի մեկ հեկտարի բերքը բարձրացնում է 4—5 ցենտներով, բամբակինը՝ 2 ցենտներով, շաքարի ճակնդեղինը՝ 25—30 ցենտներով, կարտոֆիլինը՝ 18—20 ցենտներով և այլն։ Մեկ ցենտներ սուպերֆոսֆատը հողին տալու դեպքում հեկտարից լրացուցիչ ստացվում է 3—4 ցենտներ հացահատիկ։ Քիմիան գյուղատնտեսությանը պարարտանյութեր տալուց բացի, տալիս է այնպիսի պրեպարատներ, որոնք ոչնչացնում են մոլախոտերը, բույսերը պաշտպանում վնասատուներից և հիվանդություններից, որոնք, ինչպես հայտնի է, ամեն տարի զգալի չափով իջեցնում են բերքատվությունը, կորչում է բերքի այնպիսի մաս, որի արժեքը միլիոնավոր և միլիարդավոր ռուբլիներ են կազմում։ Քիմիական արտադրանքը լայնորեն կիրառվում է նաև անասնապահության մեջ և գյուղատնտեսության այլ կարիքների համար։

Ուրեմն քիմիայի կիրառումը գյուղատնտեսության արտադրության մեջ վիթխարի դեր կխաղա գյուղատնտեսության հետագա վերելքի, հացահատիկի և մյուս մթերքների արտադրությունը առաջիկա կարճ ժամանակամիջոցում զգալի չափով ավելացնելու համար։ Օգտագործելով քիմիայի ընձեռած մեծ հնարավորությունները, ինչպես նաև զարգացնելով հողերի ոռոգման ու ջրովի դարձնելու, գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման և մեքենայացման աշխատանքները, զգալիորեն կթուլանա գյուղատնտեսության կախումը բնության քմահաճույքներից, եղանակից և հնարավոր կլինի ստանալ կայուն բերք։

Մեր երկրում մեծ քիմիա ստեղծելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի 1958 թվականի մայիսյան պլենումի ընդունած ծրագիրը հաջողությամբ իրականացվում է։ Յոթնամյակի առաջին չորս տարում շարք են մտել ավելի քան 200 նոր քիմիական ձեռնարկություններ ու խոշոր ցեխեր, քիմիական արտադրանքի թողարկումը ավելացել է 1,6 անգամ։ Ընթացիկ տարում կթողարկվի



ավելի քան 20 միլիոն տոննա հանքային պարարտանյութեր՝ 1940 թվականին արտադրված 3,2 միլիոն տոննայի և 1953 թվականի 7 միլիոն տոննայի դիմաց։ 1964 թվականին պետք է արտադրվի առնվազն 24 միլիոն տոննա պարարտանյութ, 1965 թվականին՝ 35 միլիոն տոննա, իսկ 1970 թվականին՝ 100 միլիոն տոննա պարարտանյութ։

Այդ մեծ խնդրի կենսագործման ասպարեզում խոշոր աշխատանք է կատարվելու նաև մեր ռեսպուբլիկայում։ Հայաստանը մեծ քիմիայի ռեսպուբլիկա է։ Նա երկրին տալիս է բազմաթիվ տեսակի քիմիական նյութեր, այդ թվում նաև գյուղատնտեսության համար պարարտանյութեր, բույսերի պաշտպանության միջոցներ։ Ընթացիկ տարում ժողտնտխորհի քիմիական արդյունաբերության ձեռնարկությունները արտադրել են ավելի քան 80 հազար տոննա պարարտանյութեր և մեծ քանակությամբ կրոտիլին, որը արժեքավոր նյութ է դաշտային վնասատուների և մոլախոտերի դեմ պայքարելու համար։

Արձագանքելով պարտիայի ու կառավարության կոչին ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության աշխատողները վերանայում են իրենց հնարավորությունները, որպեսզի ավելացնեն պարարտանյութերի, գյուղատնտեսության անհրաժեշտ թունաքիմիկատների և դրանց նոր տեսակների արտադրությունը։

Մեր ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության ձեռնարկություններից պարտիայի առաջադրած այդ մեծ խնդիրը կենսագործելու ասպարեզում վիթխարի անելիքներ ունի Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատը, որը մեծ ճանաչում ունի ոչ միայն մեր, այլև անդրկովկասյան և մյուս ռեսպուբլիկաների գյուղատնտեսական շրջաններում։ Կիրովականի քիմկոմբինատը արտադրում է ազոտային պարարտանյութեր՝ ամյակային սելիտրա, կալցիումի ցիանամիդ և այլ արժեքավոր նյութեր։ Օրինակ, ամյակային սելիտրայի այն քանակությունը, որը պարունակում է մեկ կիլոգրամ ազոտ, մեկ հեկտար տարածության վրա օգտագործելու դեպքում կարտոֆիլի բերքատվությունը կավելացնի 120, ճակնդեղինը՝ 120—160, բամբակինը՝

10—12 կիլոգրամ։ Նախատեսվում է առաջիկա 3—4 տարում այդտեղ ամյակի արտադրությունը, որը հումք է հանդիսանում ամյակային սելիտրայի համար, ավելացնել 5 անգամ։ Նախատեսվում է 1965 թվականին ամյակային սելիտրայի արտադրությունը կրկնապատկել։ Բացի դրանից, Կիրովականում կազմակերպվում է նոր տեսակի պարարտանյութի՝ կարբամիդի (միզանյութ) արտադրությունը, որը ավելի շատ ազոտ է պարունակում և ավելի էֆեկտիվ է, քան ամյակային սելիտրան։ Այդ պարարտանյութի օգտագործումը բերքատվությունը կբարձրացնի մոտ մեկ ու կես անգամ։ Մեծ է կարբամիդի նշանակությունը նաև անասնապահության ասպարեզում։ Խոշոր եղջերավոր անասունների մսուրային շրջանում օրվա կերաբաժնում 130—150 գրամ կարբամիդ ավելացնելու դեպքում մսատվության շաբաթական աճը կավելանա 500—550 գրամով։

Յոթնամյա պլանով նախատեսված է Կիրովականի քիմիական կոմբինատում կառուցել նաև ամոնյակի և միզանյութի արտադրության հզոր ցեխեր։ Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանում թողարկվում են թունաքիմիկատներ, որոնք ոչնչացնում են մոլախոտեր, զանազան պարազիտային բույսեր։ Այդպիսին է, օրինակ, այնտեղ արտադրվող հերբիցիդ կրոտիլինը, որը լայնորեն կիրառվում է գյուղատնտեսական տարբեր շրջաններում։ Այդ թունաքիմիկատի արտադրությունը առաջիկայում կավելանա մի քանի անգամ։ Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատում արտադրվում է ծծմբաթթու, որը համարվում է քիմիայի հացը, ինչպես նաև պարարտանյութեր և թունաքիմիկատներ։ Խնդիր է դրվում զգալիորեն ավելացնել նաև դրանց արտադրությունը և արագացնել այնտեղ ծծմբաթթվի խոշոր գործարանի շինարարությունը։ Նախատեսվում է նաև գյուղատնտեսությանը անհրաժեշտ նաև այլ պարարտանյութերի և միջոցների արտադրության ավելացում և նոր արտադրությունների կազմակերպում։

Ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության աշխատողները ավելացնելով պարարտանյութերի և թունաքիմիկատների արտադրությունը կնպաստեն գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացմանը։

Պ. ՂԱԶԱՐՅԱՆ



# ՄՈՆՂՈԼ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՆԾԱԼԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Տպագրվում է Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հռչակման 39-րդ տարեդարձի առթիվ, թվեր և փաստեր)

Մոնղոլ ժողովուրդը սովետական ժողովրդի եղբայրական օգնությամբ 1921 թվականին կատարեց հակաիմպերիալիստական ժողովրդական ռևոլյուցիա և նվաճեց ազատություն ու անկախություն: Ձեռք բերելով անկախ պետականություն Մոնղոլիայի աշխատավորները պատմական կարճ ժամանակամիջոցում, ժողովրդա-ռևոլյուցիոն պարտիայի ղեկավարությամբ, Սովետական Միության անշահախնդիր օգնության շնորհիվ հասան մեծագույն հաջողությունների: Ահա թվեր և փաստեր այդ մասին:

Ժողովրդական իշխանության տարիներին Մոնղոլիան քոչվորական-անասնապահական հետամնաց երկրից դարձավ ագրարային-ինդուստրիալ սոցիալիստական տերություն։

Կարճ ժամանակամիջոցում, ՍՍՌՄ օգնությամբ, Մոնղոլիայում ստեղծվել է ազգային արդյունաբերություն, հատկապես քարածխային, լեռնահանքային, նավթային և էներգետիկ արդյունաբերություն։ Ստեղծվել են ժամանակակից տրանսպորտի և կապի միջոցներ։

Եթե ռևոլյուցիայից առաջ երկրում չկար արդյունաբերություն, ապա ներկայումս ժողովրդական տնտեսության արտադրանքի 43 տոկոսը տալիս է նորաստեղծ արդյունաբերությունը։

Անցյալ տարի, նախորդ տարվա համեմատությամբ, արդյունաբերական արտադրանքը ավելացել է 14,2 տոկոսով։

Արագ թափով առաջ է գնում երկրի էլեկտրիֆիկացումը։ 1962 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, էլեկտրաէներգիայի արտադրությունը ավելացել է 4,3 անգամ։

Նշանակալից հաջողություններ են ձեռք բերվել ածխի հանույթը ավելացնելու գործում։ 1962 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, ածխի հանույթը ավելացել է 16 տոկոսով։

Երկրում քիչ չեն հաջողությունները փայտանյութի արտադրության ավելացման գործում, որը նորաստեղծ արդյունաբերու-

թյան ճյուղերից մեկն է։ Միայն անցյալ տարի մթերվել է 250 հազար խորանարդ մետր փայտանյութ։ Մոնղոլիան իր անտառային հարստությամբ չի զիջում Ֆինլանդիային։

Աննախընթաց հաջողություններ են ձեռք բերվել անասնաբուծության բնագավառում։ Ներկայումս Մոնղոլիայում կա մոտ 12 միլիոն ոչխար և մեծ քանակությամբ խոշոր եղջերավոր անասուն։ Այժմ ամեն մի բնակչի հասնում է 21,2 գլուխ անասուն։

Միայն անցյալ տարի, 1961 թվականի համեմատությամբ, անասունների գլխաքանակը ավելացավ մոտ 600 հազարով։

Մոնղոլիայի երիտասարդության ուժերով անցյալ տարի ջրովի է դարձվել 3,5 միլիոն հեկտար արոտավայր։

Անցյալ տարի միայն պետական տնտեսություններում աշխատում էին ավելի քան 1200 կոմբայն, ավելի քան 2 հազար հատ տրակտորահնձիչներ և շատ ուրիշ տեխնիկա։

Անընդհատ բարելավվում է մոնղոլ ժողովրդի բնակարանային պայմանները։ Միայն 1962 թվականին շահագործման է հանձնվել 67 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։

Մոնղոլ ժողովուրդը նշանակալից հաջողությունների է հասել ժողովրդական կրթության բնագավառում։ 1962—1963 ուսումնական տարում ռեսպուբլիկայի յուրաքանչյուր հազար բնակչից բարձրագույն ուսումնական հաստատություններում և դպրոցներում սովորում էին 152 հոգի։

Ժողովրդական Մոնղոլիայում վաղուց լիկվիդացված է անգրագիտությունը։ Ներկայումս Մոնղոլիայի յուրաքանչյուր 6-րդ բնակիչը որևէ ուսումնական հաստատության սովորող է։

Քառասուն մեկ տարի առաջ Մոնղոլիայում եղել է ընդամենը 40 աշակերտ, իսկ 1962 թվականին այդ թիվը հասել է 141 հազար 400-ի։ Անցյալ տարի ռեսպուբլիկայի յուրաքանչյուր 10 հազար բնակչից 1378 հոգին սովորողներ էին։ Միայն 1961 թվականին Մոնղոլիայի ուսումնական հաստատությունները երկրին տվել են 2,5 հազար մասնագետներ։

Ներկայումս Ժողովրդական Մոնղոլիան ավելի քան 30 երկրների հետ ունի դիվանագիտական հարաբերություն։ Մոնղոլ ժողովուրդը ջերմորեն պաշտպանում է խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքները։



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Ազատագրված հայ ժողովրդի մեծ հաջողությունները

ա. Սովետական Հայաստանը մեծ հոկտեմբերի ծնունդն է.

բ. Սովետական Հայաստանը ծաղկում և բարգավաճում է ՍՍՌՄ եղբայրական ընտանիքում.

գ. Արդյունաբերության հզոր վերելքը Սովետական Հայաստանում.

դ. Սովետական Հայաստանը մեծ քիմիայի երկիր է.

ե. Սովետական Հայաստանի գյուղատնտեսությունը 43 տարում.

զ. Գիտության, գրականության և արվեստի զարգացումը Սովետական Հայաստանում.

է. Ժողովրդական կրթության բուռն աճը Սովետական Հայաստանում։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Հեռագիր Հայաստանի ռազմական-ռևոլյուցիոն կոմիտեի նախագահին, *Երկեր, հատոր 31, էջ 550, Հայպետհրատ, 1952։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին, *Երկեր, հատոր 32, էջ 402—405, Հայպետհրատ, 1952։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ, արտասանած 1961 թվականի մայիսի 6-ին, Երևան քաղաքում տեղի ունեցած հանդիսավոր նիստում՝ նվիրված Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմունիստական պարտիայի կազմավորման 40-ամյակին, *Հայպետհրատ, 1961։*

ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ—Զեկուցում Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի և Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի հանդիսավոր նիստում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի մայիսի 7-ի համարում։*

Ա. Ե. ՔՈՉԻՆՅԱՆ— Հայաստանը յոթնամյակում, *Հայպետհրատ, 1960։*

Վ. Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ— Գիտությունը Հայաստանում 40 տարում, *Հայկական ՍՍՌ ԳԱ հրատարակչություն, 1960։*

## 2. ՍՄԿՊ ծրագրի երկրորդ տարին

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագիրը։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սովետական Միության կոմունիստական

պարտիայի ծրագրի մասին, *զեկուցում տրված ՍՄԿՊ XXII համագումարում։*

ՍՄԿՊ ծրագիրը մեր մարտական դրոշն է, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի նոյեմբերի 1-ի համարում։*

## 3. ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի մեկ տարին

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՍՌՄ էկոնոմիկայի զարգացումը և ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարումը, *զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի 1962 թվականի նոյեմբերյան պլենումում, Հայպետհրատ, 1962։*

ՍՍՌՄ էկոնոմիկայի զարգացման և ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարումը վերակառուցելու մասին, *ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումը ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման վերաբերյալ, Հայպետհրատ, 1962։*

ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ— Ճառ ՍՄԿՊ Կենտկոմի 1962 թվականի նոյեմբերյան պլենումում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1962 թվականի նոյեմբերի 23-ի համարում։*

## 4. Բոլոր ուժերը յոթնամյակի հինգերորդ տարվա եզրափակիչ եռամսյակի պլանների կատարման և գերակատարման համար

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Երկրի տնտեսական հզորության բարձրացման համար մղվող պայքարը։ Յոթնամյակը կարևոր էտապ է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, Հայպետհրատ, 1961։*

*ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ*— ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի արդյունքների և գաղափարական աշխատանքը բարելավելու ուղղությամբ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպության խնդիրների մասին, *զեկուցում ՀԿՊ Կենտկոմի պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 7-ի համարում։*

Հայկական ՍՍՌ արդյունաբերության 1963 թվականի երրորդ եռամսյակի և ինն ամսվա պետական պլանի կատարման արդյունքների մասին Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հոկտեմբերի 20-ի համարում։*

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



СОДЕРЖАНИЕ






Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։*

Адрес редакции — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.

# ԲԱՑՎԱԾ Է

«ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-ի 1964 թվականի բաժանորդագրությունը.

1 ամիսը— 15 կոպեկ
6 ամիսը— 90 կոպեկ
12 ամիսը— 1 ռուբ. 80 կոպեկ

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵՔ

«ԳԻՏՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱ» ամսագրին.

1 ամիսը— 40 կոպեկ
6 ամիսը— 2 ռուբ. 40 կոպեկ
12 ամիսը— 4 ռուբ. 80 կոպեկ

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»

---

**Отдел идеологической работы ЦК КП Армении**

**АГИТАТОРИ БЛОКНОТ**

**№ 22**

**1963**

*ՎՖ 12242*    *Պատվեր 995*    *Տիրաժ 7961*

*Հանձնված է արտադրության 3/XI 1963 թ.*
*Ստորագրված է տպագրության 13/XI 1963 թ.*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 3 կոպ.։*    Ինդեքս՝ 77704